# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ



ԴԵԿՏԵՄԲԵՐ

23

1964

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ




Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

Адрес редакции — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 23
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1964

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԱԳԻՏԱՏՈՐ ՎԵՏԵՐԱՆԸ

*Իրավացի են Երևանի Լ. Լիսինյանի անվան տեքստիլ-գալանտերիայի ֆաբրիկայի աշխատողները, երբ իրենց նախկին դիրեկտոր, այժմ անհատական թոշակառու ընկ. Հ. Դեմիրչյանին անվանում են ագիտատոր վետերան։ Այո, ընկ. Դեմիրչյանը վետերան է ոչ միայն սովորական աշխատանքում, այլև ագիտացիայի-պրոպագանդայի ասպարեզում։ Նա երկար տարիներ՝ սկսած քաղաքացիական կռիվների ժամանակներից մինչև այսօր, ուսանելի աշխատանք է կատարում նոր մարդու դաստիարակության գործում։ Նրա ունկնդիրներից շատ-շատերը, որոնց կարելի է թվարկել միայն տասնյակներով ու հարյուրներով, ժողովրդական տնտեսության մեջ աչքի ընկնող աշխատողներ են, արտադրության հրամանատարներ ու առաջավորներ։ Նրանք շատ բարձր են գնահատում ընկ. Դեմիրչյանին թե որպես արտադրության հմուտ ղեկավարի և թե որպես երիտասարդության լավագույն դաստիարակի։*

*Երեք տարի առաջ ընկ. Հ. Դեմիրչյանը թոշակի անցնելու կապակցությամբ սիրով հրաժարվեց դիրեկտորական պաշտոնից, բայց մտքովն անգամ չանցավ հրաժարվել ագիտատորի պարտականություններից։ Նա չհեռացավ այն կոլեկտիվից, որի հետ տարիներ անընդհատ աշխատել ու պայքարել էր երկրին ավելի շատ արտադրանք տալու համար և իր սիրելի ունկնդիրներից, որոնց խորհրդատուն ու դաստիարակն էր եղել շատ տարիներ։*

*Ներկայումս ագիտատոր վետերանը սիստեմատի-*

կաքար, շաբաթական մի քանի անգամ հաճախում է ֆաբրիկա և ագիտացիոն զրույցներ ունենում ունկնդիրների հետ։ Նա հատուկ ուշադրություն է դարձնում աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։ Այդ կապակցությամբ ունկնդիրների հետ նա զրույց է ունենում և պարզաբանում նրանց, թե ինչպես ու ինչ միջոցներով կարելի է բարձրացնել արտադրանքի որակը, աշխատանքի արտադրողականությունը, արդյունավետ օգտագործել տեխնիկան, հումքը, օժանդակ նյութերը և էլեկտրաէներգիան։

Վերջերս կոճակների ցեխում նա ունկնդիրների հետ զրույց ունեցավ աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին։ Զրույցի սկզբում նա հանգամանորեն խոսեց աշխատանքի արտադրողականության բարձրացման նշանակության մասին և ապա օգտագործելով Վ. Ի. Լենինի «Սովետական իշխանության հերթական խնդիրները» աշխատությունը, ունկնդիրների ուշադրությունը բևեռեց այն հանգամանքի վրա, որ Վ. Ի. Լենինը նոր կարգերի հաղթանակի համար գլխավորն ու վճռականը համարել է աշխատանքի ամենաբարձր արտադրողականության նվաճումը։

Զրույցի այս մասում ագիտատորը բազմաթիվ օրինակներ բերեց հենց իրենց ֆաբրիկայից։ Նա խոսեց տեխնիկական պրոգրեսը ապահովելու գործում ձեռք բերված հաջողությունների մասին և կոնկրետ ու կենդանի օրինակներով ցույց տվեց, թե ինչպես մեր երկրում արտադրության պրոցեսները սիստեմատիկաբար մեքենայացնելու ու ավտոմատացնելու միջոցով անընդհատ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը։ Ագիտատորը միաժամանակ նշեց, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում վճռական դեր է խաղում բանվորների որակավորումը։ —Որքան բանվորը աշխատանքում հմուտ լինի,— ասաց նա,— որքան լավ իմանա իր գործը, այնքան շատ և որակով կլինի արտադրանքը։—Ահա, օրինակ, մեր ֆաբրիկան,— շարունակում է ագիտատորը,— մի քանի տարի առաջ 15—20 տոննա քաշ ունեցող մամլիչները ձեռքի ուժով էին պտտեցվում, իսկ ներկայումս դրանք փոխարինվել են 60 տոննանոց մամլիչներով և աշխատում են ավտոմատ։ Դրա շնորհիվ կոճակների ցեխում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է ավելի քան երեք անգամ, թեթևացել է բանվորի աշխատանքը։





Հայտնի է, որ ագիտացիան առանց կազմակերպական աշխատանքի ցանկացած արդյունքը չի տալիս։ Այդ նկատի ունենալով ընկ. Դեմիրճյանը լուրջ ուշադրություն է դարձնում աշխատանքում ընկերական օգնության վրա, որպեսզի բանվորները գործում միմյանց օգնեն, ետ մնացողներին հասցնեն առաջավորներին։ Նրա ագիտացիոն աշխատանքի պրակտիկայից կարելի է շատ օրինակներ հիշատակել, երբ ընկերական օգնության շնորհիվ սկսնակ բանվորները կարճ ժամանակում ձեռք են բերել արտադրական հմտություն, ավելի արդյունավետ են օգտագործել մեքենաներն ու նյութերը, բարելավել են արտադրանքի որակը։ Օրինակ, բանվորուհիներ Էմմա Առաքելյանը, Սիրուն Շահնազարյանը, Նատալյա Հովակիմյանը երբեմն թերակատարում էին իրենց արտադրական նորմաները։ Ագիտատորը մանրակրկիտ ուսումնասիրում է բանվորուհիների աշխատանքային պրակտիկան և պարզում, որ նրանք արդյունավետ չեն կարողանում օգտագործել բանվորական օրը։ Այդ կապակցությամբ նա ետ մնացող բանվորուհիներին ծանոթացնում է մրցության առաջավորների փորձի հետ, իսկ հետո հանձնարարում նույն ցեխի առաջավորներ Սեդա Ավագյանին, Վերգինե Հովհաննիսյանին, որպեսզի վերջիններս հետևեն և ամեն օր օգնեն նրանց օրվա պլանները կատարելու համար։ Որոշ ժամանակից հետո ետ մնացող բանվորուհիները սկսում են ոչ միայն կատարել, այլև գերակատարել արտադրական պլանները։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի ընթացքում ագիտատոր Դեմիրճյանը հատուկ ուշադրություն է դարձնում սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները կատարելու վրա։

Ագիտատորի օգնությամբ տարվա սկզբին ցեխի բանվորները ամփոփելով սոցմրցության նախորդ տարվա արդյունքները, ստանձնեցին նոր պարտավորություններ։ Սկզբում ագիտատորը մանրամասնությամբ ունկնդիրներին պարզաբանեց ավելի շատ և ավելի որակյալ արտադրանք տալու ուղիները, բարձր ցուցանիշների հասնելու կոնկրետ միջոցներն ու հնարավորությունները, իսկ հետո, հետևեց թե ով ինչպես է կատարում իր խոստումը։ Նա ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը հաճախակի դարձրել է զրույցի նյութ, խրախուսել մրցության առաջավորներին,

մասսայականացրել նրանց աշխատանքի փորձը: Օրի-
նակ, հսկողների բրիգադը (բրիգադիր Լ. Գրիգորյան),
ֆաբրիկայում ծավալված սոցմրցության մեջ միշտ
հաղթող էր դուրս գալիս, նույնիսկ բրիգադը արժանա-
ցավ կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչմա-
նը: Առաջավոր բրիգադի փորձը ագիտատորը դարձրեց
զրույցի նյութ և այդ միջոցով օգնեց ունկնդիրներին
անթերի կատարելու ստանձնած պարտավորություննե-
րը, սովորելու լավը, առաջավորը: Ագիտատորը զրույց-
ների ընթացքում բազմիցս խրախուսել է մրցության
առաջավորներին, ինչպես, օրինակ, Ա. Ավետիսյանին,
Վ. Սոկոլովին, Շ. Ամրոյանին, Վ. Կեշյանին, Մ. Կարա-
պետյանին, Վ. Ոսկանյանին և շատ ուրիշներին: Նրանց
օրինակով դաստիարակել մյուսներին:

Կատարելով իր ագիտատոր-կազմակերպչի դերը
ընկ. Դեմիրչյանը ունկնդիրների հետ միասին հոգ է
տանում արտադրանքի որակը բարելավելու վերաբեր-
յալ: Վերջերս նա ֆաբրիկայի ղեկավարության առջև
խնդիր դրեց կոճակների արտադրության մեջ օրգանա-
կան ապակի օգտագործելու մասին, որն ավելի գեղեցիկ
է և տնտեսապես շահավետ: Կոճակների արտադրու-
թյան մեջ օրգանական ապակի օգտագործելու դեպքում
մեր ռեսպուբլիկան կազատվի մի շարք ավելորդ ծախ-
սերից, հարկ չի լինի դրսից ներմուծել պլաստմասսայի
այն տեսակները, որոնք մինչև վերջերս գործածվում էին
կոճակի արտադրության մեջ: Ագիտատորի այդ և շատ
ուրիշ առաջարկություններ սիրով ընդունվել են:

Ագիտատոր Դեմիրչյանը նկատել էր, որ կոճակների
ցեխում գերազանց որակի արտադրանք է ստացվում
միայն այն ժամանակ, երբ հղկման աշխատանքները
կատարվում են առավել բարեխղճությամբ, երբ այդ
գործում օգտագործվում են աշխատանքի առաջավոր
մեթոդներ: Այդ կապակցությամբ նա ուսումնասիրում է
եղբայրական էստոնացիների փորձը, Տալլին քաղաքի
նույնանման ֆաբրիկայի առաջավորների փորձը և այն
ցեխում մասսայականացնում:

Ագիտացիոն աշխատանքը լավագույն միջոց է ձեռ-
նարկության աշխատանքը բարելավելու, ստանձնած
պարտավորությունները պատվով կատարելու գործում:
Եվ այդ լավագույն միջոցը խելացի ու մտածված կեր-
պով է օգտագործում մեր ագիտատոր վետերանը:

Ն. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՕՐԸ

Ամեն տարի դեկտեմբերի 5-ին մեր երկրի ժողո-
վուրդները նշում են աշխարհի առաջին սոցիալիստա-
կան պետության Հիմնական օրենքի՝ ՍՍՌՄ Կոնստիտու-
ցիայի օրը: 1936 թվականի դեկտեմբերի 5-ին ՍՍՌՄ
սովետների 8-րդ արտակարգ համագումարը ընդունեց
նոր կոնստիտուցիա, որը մեծ իրավունքներ տվեց աշ-
խատավոր մարդկանց՝ սովետական քաղաքացիներին:

ՍՍՌՄ Կոնստիտուցիան բոլոր քաղաքացիների հա-
մար ապահովում է իրավահավասարություն տնտեսա-
կան, պետական, կուլտուրական ու հասարակական
կյանքի բոլոր բնագավառներում՝ անկախ նրանց ազգա-
յին ու ռասայական պատկանելությունից: Սովետա-
կան մարդկանց իրավունքների որևէ ուղղակի կամ ան-
ուղղակի սահմանափակում կամ ազգային ու ռասա-
յական ատելության և արհամարհանքի ամեն տեսակ
քարոզ պատժվում են օրենքով: Սովետական քաղաքա-
ցիների իրավունքները բազմազան են քաղաքական,
կուլտուրական և տնտեսական շինարարության բնա-
գավառներում:

ՍՍՌՄ Կոնստիտուցիան սովետական քաղաքացինե-
րին տալիս է աշխատանքային անխախտ իրավունք: Եթե
կապիտալիստական երկրների կոնստիտուցիաները
սահմանափակվում են քաղաքացիների իրավունքների
ձևական արձանագրումով, ապա ՍՍՌՄ Կոնստիտուցիան
ծանրության կենտրոնը փոխադրում է այդ իրավունք-
ները կյանքում իրականացնելու հարցի վրա: Գործա-
զրկությունը, որը հատուկ է կապիտալիստական երկր-
ներին, սոցիալիստական երկրում վաղուց վերացվել է:
ՍՍՌՄ-ում աշխատանքի ընդունակ բոլոր քաղաքացինե-
րը ապահովված են աշխատանքով: Սովետական մար-
դիկ աշխատում են ի բարօրություն իրենց հայրենիքի,
ի բարօրություն իրենց պետության, այն պետության,
որը կազմված է հենց իրենցից՝ աշխատավորներից:
Սովետական մարդկանց ստեղծագործ աշխատանքով
մեր երկիրը մինչև 1964 թվականի վերջը արտադրելու
է 85 միլիոն տոննա պողպատ, այսինքն ավելի, քան
արտադրելու են Անգլիան, Ֆրանսիան և Արևմտյան
Գերմանիան միասին վերցրած, 223 միլիոն տոննա

նավթ, 55 միլիոն տոննա ածուխ, 459 միլիարդ կիլո-
վատ-ժամ էլեկտրաէներգիա և այլն: Դա սովետական
պետության հզորության այն աղբյուրն է, որը ստեղծում
և որից օգտվում են իրենք՝ աշխատավորները: Աշխա-
տանքը սովետական երկրում յուրաքանչյուր աշխատան-
քի ընդունակ մարդու փառքի և պատվի գործն է: Սովե-
տական մարդը իր աշխատանքով է գեղեցիկ, իր աշխա-
տանքով է հզորացնում սովետական պետությունը:

ԱՄՆ-ում, այսպես կոչված «դեմոկրատիայի» և «ա-
զատությունների» երկրում, ապրում են ավելի քան 19
միլիոն նեգրեր, որոնք իրենց սեփական երկրում սև
մորթ ունենալու պատճառով ոչ միայն զրկված են քա-
ղաքական տարրական իրավունքներից, այլև աշխա-
տանքային, կրթության և այլ իրավունքներից: Ռասա-
յականության հրեշավոր խտրական քաղաքականու-
թյունը տարածվում է ամերիկյան նեգր բնակչության
կյանքի ու գործունեության բոլոր բնագավառների վրա:
Հատկապես ծանր է գյուղատնտեսության մեջ աշխա-
տողների վիճակը: Դրանց ճնշող մեծամասնությունը
սիստեմատիկորեն թափառում է հարավային նահանգ-
ներում աշխատանք որոնելու հույսով:

ՍՍՌՄ Կոնստիտուցիան սովետական քաղաքացինե-
րին ապահովում է հանգստի իրավունք: Սովետական
Միությունը աշխարհում առաջին երկիրն է, որտեղ գո-
յություն ունի աշխատանքային ամենակարճ օրը, բան-
վորներն ու ծառայողները աշխատում են օրական 6—7
ժամ, տարեկան ստանալով հերթական ու լրացուցիչ
վճարովի արձակուրդ: Կապիտալիստական շատ երկր-
ներում արտադրության մի շարք ճյուղերում բանվոր-
ներն օրական աշխատում են 10 ժամից ավելի, իսկ
գաղութային և կիսագաղութային երկրներում աշխա-
տանքային օրվա տևողությունն ավելի երկար է:

Աշխատավորների վիճակը արմատապես փոխվել է
Սովետական Միությունում և սոցիալիստական երկր-
ներում: Սոցիալիստական հասարակության պայմաննե-
րում հասարակական արտադրությունը անմիջականո-
րեն ենթարկվում է աշխատավորների բարեկեցության
բարձրացմանը, նրանց նյութական ու հոգևոր աճող
պահանջների առավել լրիվ բավարարմանը: Ամեն ինչ
հանուն մարդու, մարդու բարօրության համար՝ այս է
սովետական հասարակության հիմնական օրենքը:

Սովետական քաղաքացիները ծերության, հիվան-



դության, աշխատունակությունը կորցնելու դեպքում
օգտվում են նյութական ապահովության իրավունքից:
ՍՍՌՄ-ում ծերության, աշխատունակությունը կորցնե-
լու և հիվանդության դեպքում քաղաքացիների նյութա-
կան ապահովության իրավունքը Հոկտեմբերյան սո-
ցիալիստական մեծ ռևոլյուցիայի նվաճումներից մեկն
է, որն օրենսդրական կարգով իր ձևակերպումն է ստա-
ցել ՍՍՌՄ Կոնստիտուցիայի մեջ: Մեր երկրում բան-
վորները, ծառայողները, կոլտնտեսականները և կոլ-
տնտեսուհիները օգտվում են կենսաթոշակ ստանալու
իրավունքից: Կենսաթոշակներով ապահովելու իրա-
վունքը երաշխավորված է ՍՍՌՄ-ում ստեղծված սո-
ցիալիստական սիստեմի կողմից, որի պայմաններում
ընդմիշտ վերացված է աշխատավորների անվստահու-
թյունը վաղվա օրվա նկատմամբ: Բավական է ասել, որ
միայն Հայկական ՍՍՌ-ում կան 152 հազար կեն-
սաթոշակառուներ, որոնց պետությունը տարեկան վճա-
րում է 5 միլիոն ռուբլուց ավելի գումար:

Սովետական քաղաքացիներն ունեն կրթության ի-
րավունք, որը ապահովված է ընդհանուր պարտադիր
8-ամյա կրթությամբ, միջնակարգ ընդհանուր պոլի-
տեխնիկ կրթության լայն զարգացմամբ: Ինչպես Սովե-
տական Միությունում, այնպես էլ նրա անբաժան մա-
սը կազմող Սովետական Հայաստանում ստեղծված է
դպրոցների լայն ցանց: Միայն այս տարի մեր ռեսպուբ-
լիկայի հանրակրթական դպրոցներում սովորում են
450,5 հազար դպրոցականներ: Սովետական Հայաս-
տանում յուրաքանչյուր չորրորդ մարդը սովորող է: Այս
ասպարեզում մեր ռեսպուբլիկան առաջ է անցել այն-
պիսի զարգացած կապիտալիստական երկրներից, ինչ-
պիսին են Անգլիան, Ֆրանսիան, Իտալիան և այլն:

ՍՍՌՄ Կոնստիտուցիան սովետական քաղաքացինե-
րին ապահովում է բնակարանի անձեռնմխելիության,
նամակագրության գաղտնիության, ինչպես նաև անձի
անձեռնմխելիության իրավունքներ:

Ամեն տարի արտասահմանյան երկրներից բազմա-
թիվ հայեր են վերադառնում հայրենիք: Սովետական
պետությունը նրանց շրջապատել է ջերմ հոգատարու-
թյամբ, նրանք լիիրավ սովետական քաղաքացիներ են
և հայրենիք վերադառնալու հենց առաջին օրվանից
օգտվում են ՍՍՌՄ քաղաքացիների բոլոր իրավունք-
ներից:

ՍՍՌՄ Կոնստիտուցիայի ընդունումից հետո անցել է ընդամենը 28 տարի և պատմական այդ կարճ ժամանակամիջոցում խոշոր տեղաշարժեր են կատարվել սովետական ժողովրդի հասարակական-տնտեսական և պետական կառուցվածքի մեջ, ավելի ու ավելի են ընդարձակվել սովետական քաղաքացիների իրավունքները։

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում սոցիալիստական դեմոկրատիան զարգանում է համակողմանիորեն, կատարելագործվում են պետության կառավարման ձևերը, պետությունը վեր է ածվում համաժողովրդականի, նրա աշխատանքներին ակտիվորեն մասնակցում են իրենք՝ աշխատավորները։ Անցումը կոմունիզմին, ինչպես նշված է ՍՄԿՊ ծրագրում, նշանակում է անհատի ազատության և սովետական քաղաքացիների իրավունքների բազմակողմանի զարգացում»

Հավատարիմ լենինյան պատգամներին կոմունիստական պարտիան ապահովում է բոլոր աշխատավորների ակտիվ մասնակցությունը երկրի կառավարմանը։ Միայն ՍՄԿՊ նոր ծրագրի քննարկմանը մասնակցեցին մոտ 73 միլիոն բանվորներ, կոլտնտեսականներ, գիտության, կուլտուրայի և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառի աշխատողներ։

Մեր երկրի պետական իշխանության բարձրագույն օրգանի՝ ՍՍՌՄ Գերագույն սովետի 1443 դեպուտատներից 646-ը անմիջապես աշխատում են արտադրության մեջ, այնինչ, ԱՄՆ-ի կոնգրեսում չկա ոչ մի բանվոր կամ հասարակ ֆերմեր։ ՍՍՌՄ Գերագույն սովետի դեպուտատների 70 տոկոսը ընտրվել է առաջին անգամ։ Տեղական սովետներում, բացի երկու միլիոն դեպուտատներից, հասարակական աշխատանք է կատարում մոտ 20 միլիոն մարդ։

Կոմունիզմը կատարում է բոլոր մարդկանց սոցիալական անհավասարությունից, ճնշման ու շահագործման բոլոր ձևերից, պատերազմի սարսափներից փրկելու պատմական միսիան և աշխարհում հաստատում է Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն, Երջանկություն բոլոր ժողովուրդների համար։

Դոցենտ՝ Շ. ՊԵՏՐՈՍՅԱՆ





# ՔՐԻՍՏՈՆԵԱԿԱՆ ԶԱՏԻԿ ՏՈՆԻ ՄԱՍԻՆ

«Տոների տոն և հանդեսյաց հանդես» են անվանում հավատացյալները զատիկը, քրիստոնեական կրոնի գլխավոր տոներից մեկը։ Նրանց կարծիքով, այդ տոնը սահմանել են առաջին քրիստոնյաները՝ մահապատժի ենթարկված Հիսուս Քրիստոս աստծու հրաշալի հարության հիշատակին։ Այդ իրադարձությունը ընկած է ամբողջ քրիստոնեական դավանաբանության հիմքում։ Չէ՞ որ իր կրած չարչարանքներով, ինչպես հավաստիացնում են եկեղեցու հայրերը, Քրիստոսը քավել է մարդկանց մեղքերը, հավատացյալներին հավիտենական կյանք է ապահովել երկնքում։ Այդ պատճառով էլ եկեղեցին այդպիսի մեծ նշանակություն է տալիս զատկի տոնին։

Սակայն արդյո՞ք իրականում տեղի է ունեցել Քրիստոսի հարությունը, որն ամեն տարի նշում են հավատացյալ մարդիկ։ Գիտությունը բացասաբար է պատասխանում այդ հարցին։ Աստվածամարդ Հիսուս Քրիստոսի կերպարը մտացածին է, հեքիաթային, ստեղծված մարդկանց երևակայությամբ։ Բայց եթե աշխարհի երեսին չի եղել Քրիստոս աստվածը, չի եղել նրա հրաշալի հարությունը, ապա այդ դեպքում ի՞նչ են տոնում հավատացյալները «սուրբ զատկի» օրը։ Այս հարցին պատասխանելու համար հայացք գցենք դարերի խորքը, ծանոթանանք հին ժամանակների ժողովուրդների կրոնների հետ, որոնցից էլ իր սկիզբն է առնում քրիստոնեական զատիկը։

Ավելի քան երեք հազար տարի առաջ հին հրեական անասնապահական ցեղերի մեջ, որոնք աստանդում էին Արաբիայի կիզիչ տափաստաններում, գարնան սկզբում նշվում էր «պեսախ» կոչվող տոնը, որը ռուսերեն փոխադրված նշանակում է «ողորմածությունը շարժել»։ Այդ բառից էլ սկիզբ է առել «пасха» (զատիկ) անունը։ Այն օրերին, երբ անասունը տալիս էր առաջին մատղաշը, հին հրեաները դիմում էին հոգիներին, խնդրելով պահպանել և ավելացնել հոտերը, կենդանինե-

րին զերծ պահել հիվանդությունից։ Որպեսզի հոգիները լսեին մարդկանց, արձագանքեին խնդրանքին, աշխատում էին նրանց սիրաշահել, գթասրտություն շարժել։ Նրանց մատաղ էին բերում մատղաշ գառներ և ուլեր։

Ժամանակի ընթացքում, երբ անասնապահական ցեղերը հասան Պաղեստինի հողերը, նրանց շատ ծիսակատարությունները և տոները խառնվեցին Պաղեստինի բուն բնակչության ծիսակատարություններին ու տոներին, բնակիչներ, որոնք հիմնականում հողագործությամբ էին զբաղվում։ Այդ հողագործ ցեղերի մեջ գոյություն ուներ, օրինակ, մացցոտ տոնը։ Այն կապված է հնձի հետ, որը Պաղեստինում կատարվում է գարնանը։ Տոն օրը երկրագործները իրենց արգասավորության աստծուն մատաղ էին բերում նոր բերքի առաջին խուրձը և առաջին հացահատիկի քաղցրահամ բլիթները։ Դա ևս աստծու գթասրտությունը շարժելու յուրահատուկ ձև էր։

Ժամանակի ընթացքում աստծու գթասրտությունը շարժելու հողագործների և անասնապահների տոները միացան, մեկ կրոնական տոն դարձան։ Այդ տոնը յոթ օր էր տևում։ Աստվածներին զոհ էին բերում մատղաշ անասուններ և ուտում էին նրանց միսը։ Բերքի առաջին խրձերի կալսից ստացված ալյուրից քաղցրահամ բլիթներ էին թխում, որոնք օգտագործվում էին սննդի մեջ ամբողջ տոնակատարման ընթացքում։

Հետագայում այդ հին հրեական տոնը կորցրեց իր շատ գծերը։ Պաղեստինյան բնակչության կենսապայմանների փոփոխման հետ միասին նա ստացավ նոր բովանդակություն, աստիճանաբար կորցնելով իր նախկին կապը տնտեսական պարագաների հետ։ Երբ Պաղեստինը նվաճվեց օտարերկրացիների կողմից և հրեական ժողովուրդը ընկավ հռոմեացի զավթիչների լծի տակ, զատկի գլխավոր բովանդակությունը դարձավ հավատը աստվածային փրկչի՝ մեսիայի գալստյան, որը պետք է ազատագրեր կեղեքված հրեաներին։

Քրիստոնեական կրոնը զատկի տոնը կապել է Հիսուս Քրիստոսի վերաբերյալ ավետարանական առասպելի հետ, ըստ որում քրիստոնեական զատիկը սկզբում ամենևին էլ նման չէր այն տոնին, որը նշում են հավատացյալները մեր օրերում։ Առաջին քրիստոնյաները նշում էին ոչ թե Քրիստոսի հարությունը, այլ չար-



չարանքն ու մահը։ Զատկի օրերին մարդիկ պաս էին պահում, ողբում էին Քրիստոսին, նրա մահը։ Միայն շատ տարիներ անց հավատացյալներն սկսեցին զատկական օրերին տոնել Քրիստոսի հարությունը, իսկ նրա չարչարանքն ու մահը սկսեցին նշել չարչարանաց շաբաթվա ընթացքում։

Սակայն զատկի նոր բովանդակությունն էլ քրիստոնեությունը նույնպես ընդօրինակել է հին ժողովուրդների հավատալիքներից։ Քրիստոնեության ծագումից դեռ շատ առաջ արևելյան շատ ժողովուրդների մեջ գոյություն ունեին պատկերացումներ աստվածների մասին, որոնք մեռնում և ապա հարություն էին առնում։ Մարդիկ տեսնում էին, թե ինչպես է աշնանը բուսականությունը թառամում, իսկ գարնանը նորից է ծնվում։ Իսկ եթե դա այդպես է, ապա աստվածներն էլ, որոնք, նրանց կարծիքով, կառավարում էին բնության բոլոր երևույթները, ընդունակ են մեռնելու և հարություն առնելու։

Քրիստոնեության երևան գալուց երկու հազար տարի առաջ Բաբելոնում գոյություն ուներ տոն՝ ի պատիվ մահապատժի ենթարկված Թամմուզ աստծու։ Ավելի ուշ բաբելոնցիներն սկսեցին նշել մեռած Սարդուկ աստծու հարության տոնը։ Եգիպտոսում տոնվում էր արգասավորության աստված Օզիրիսի հարությունը, որն սպանվել էր իր նենգ եղբոր՝ Սեթի կողմից։ Եգիպտացիները ողբում էին իրենց աստծուն, սգում էին մի քանի օր, իսկ այնուհետև, երբ նա իբր թե հարություն էր ստացել, սկսվում էր ընդհանուր բերկրանքը։ Բոլորը հրճվում էին, երգում, կրոնական օրհներգեր կատարում։

Դեռևս այդ հեռավոր ժամանակներում մարդիկ հրաշալի հարության մեջ տեսնում էին անմահության, «այն աշխարհում» հավիտենական կյանքի երաշխիքը։

Քրիստոնեական եկեղեցին զատիկը կապելով Հիսուս Քրիստոսի անվան հետ, նրան նոր սոցիալական բնույթ է տվել։ Տոնի հիմքում դրվեցին եղբայրության, հնազանդության, լիակատար ներման և ընդհանուր սիրո գաղափարները։ Զատկի օրերին եկեղեցու սպասավորները հավատացյալներին սովորեցնում են խոնարհ և համբերատար լինել։ Եկեղեցական քարոզներում մարդկանց համար օրինակ է դրվում Հիսուս Քրիստոսը, որին ծեծում էին, իսկ նա լռում էր, որին խաչ էին բարձ-

բացրել, իսկ նա աղոթում էր իրեն չարչարողների համար, ասելով, որ «նրանք չեն հասկանում, թե ինչ են անում»։ Այդ քարոզները նախառևոլյուցիոն պահին, երբ չքավորները պայքարի էին ելնում իրենց կեղեքողների դեմ, ժողովրդին շեղում էին իր ազատագրության համար մղվող ռևոլյուցիոն պայքարից։ Աշխատավորները ապստամբում էին ընդդեմ չարի, բռնության, ճնշման, իսկ հոգևորականությունը նրանց ներշնչում էր, որ հարկավոր է ամեն բանում ներել «մեզ ատողներին», որ երկրի վրա լավ կյանք չպետք է փնտրել, այդ կյանքը իբր թե հավատացյալների համար «այն աշխարհում» կգա։ Այդ քարոզները մեր օրերում ևս ժողովրդին հեռացնում են երկրային երջանկությունից, իրականությունից, աշխատանքի բերկրանքից։

Որ զատկի տոնը բոլորովին էլ չի սահմանված ի նշանավորումն որևէ իրական եղելության, այդ մասին է ասում նաև այն փաստը, որ զատիկը նշվում է ամեն տարի ոչ թե որոշակի ամսվա միևնույն օրը, այլ տոնվում է տարբեր օրերում՝ ապրիլի 4-ից մինչև մայիսի 8-ը ընկած ժամանակամիջոցում։ Իսկ ինչո՞ւ Քրիստոսի հարությունը կապված չէ որոշակի օրվա հետ։ Հենց այն պատճառով, որ եկեղեցու սպասավորները չեն կարողանում իմանալ, թե Քրիստոսը երբ է հարություն առել։ Քրիստոնեության գոյության առաջին հարյուրամյակներում այդ մասին համառ վեճեր էին տեղի ունենում։ Միայն IV դարում Նիկեյակի տիեզերական ժողովում որոշվեց զատիկը տոնել գարնանային առաջին լիալուսնից հետո առաջին կիրակի օրը։ Իսկ ինչո՞ւ հենց այդ օրը։ Այս հարցին չեն կարողանում պատասխանել նաև իրենք՝ եկեղեցու սպասավորները։

Ի տարբերություն զատկի, Քրիստոսի ծննդյան տոնը նշվում է որոշակի օր— դեկտեմբերի 25-ին՝ կաթոլիկների մոտ, հունվարի 7-ին (հին տոմարով դեկտեմբերի 25-ին)՝ ուղղափառների մոտ։ Բայց դա բոլորովին էլ չի նշանակում, որ Քրիստոսը ծնվել է այդ օրերից մեկում։ Նույնիսկ հենց հոգևորականությունն էլ ընդունում է, որ անհնարին է սահմանել Հիսուս Քրիստոսի ծննդյան ոչ տարին, ոչ ամիսը, ոչ էլ օրը։ Այդ դեպքում հապա որտեղի՞ց է վերցվել Քրիստոսի ծննդյան ժամանակը։

Քրիստոսի ծննդյան տոնը, ինչպես և քրիստոնեա-



կան մյուս տոները, իրենց սկիզբն են առնում հին ժողովուրդների կրոններում։ Եթե դիմենք Քրիստոսի ծննդյան առասպելին, ապա կարելի է տեսնել, որ դա հեթանոսական աստվածների ծննդյան վերաբերյալ հին առասպելների վերապատումն է։ Քրիստոնեական կրոնը ուսուցանում է, որ միայն իրենց աստվածը՝ Հիսուս Քրիստոսն է ծնվել գերբնական եղանակով՝ կույս Մարիամից, որը բեղմնավորվել է սուրբ հոգուց։ Սակայն հրաշքի միջոցով աստվածների ծննդյան մասին նման պատմվածքներ գոյություն ունեին աշխարհի շատ ժողովուրդների մեջ դեռևս քրիստոնեությունից շատ առաջ։ Օրինակ, եգիպտացիները հավատում էին, որ իրենց Իզիդա աստվածուհին անաղարտ բեղմնավորել է Գոռ աստծուն։ Նույնպիսի գերբնական եղանակով են ծնվել ըստ հին մարդկանց հավատալիքների, հնդկական Ագնի, փռյուգիական Ատտիս աստվածները։ Կույս աղջիկ Մայիայից է ծնվել Բուդդա աստվածը։

Հիսուս Քրիստոսի ծննդյան առասպելում ընդհանուր շատ բան կա աստվածների ծննդյան մասին ավանդություններից։ Ավետարանում ասվում է, թե Քրիստոսը փարախում է ծնվել։ Իսկ արևելյան ժողովուրդների հին առասպելներում պատմվում է այն մասին, որ այնպիսի աստվածներ, ինչպես Ագնին, Ադոնիսը, Բուդդան, Քրիշնան ծնվել են քարանձավներում կամ ներքնահարկերում։ Ինչպես պատմում են հին առասպելները, հունական Ապոլլոն աստծու և պարսկական Միհր աստծու ծնունդը ուղեկցվել է երկնային ճաճանչապատումով, իսկ երբ ծնվեց հնդկական Քրիշնա աստվածը, երկնքում աստղ փայլատակեց։ Սրանց պես ավետարաններն էլ ասում են, որ Հիսուսի ծնվելու պահին լուսավոր ամպ է երևացել, իսկ Բեթղեհեմի վրա փայլուն աստղ է կանգնել։ Կարելի է այդպիսի նման շատ տեղեր գտնել Քրիստոսի ծննդյան մասին ավետարանական հեքիաթում և մյուս աստվածների մասին՝ հին առասպելներում։ Եվ դա ասում է այն մասին, որ կազմելով Հիսուս Քրիստոսի «կենսագրությունը», հոգևորականությունը նյութ է քաղել մինչքրիստոնեական կրոնի հնագույն ավանդություններից։

*Պետք է ասել նաև այն մասին, որ հին ժողովուրդնե-
րը, ինչպես և քրիստոնյաները, իրենց տոներն ունեին ի
պատիվ աստվածների ծննդյան։ Նրանցից մի քանիսը,
ինչպես և Հիսուս Քրիստոսի ծնունդը, նշվում էին դեկ-
տեմբերի 25-ին։ Այդ օրն էր տոնվում, օրինակ, հունա-
կան Ադոնիս, պարսկական Միհր, բաբելոնյան Թամ-
մուզ և այլ աստվածների ծնունդը։ Պատահակա՞ն է ար-
դյոք նման զուգադիպումը։ Պարզվում է, որ պատահա-
կան չէ։*

*Շատ երկրներում քրիստոնեության ծագումից դեռ
շատ առաջ գոյություն ունեին հեթանոսական տոներ
ձմեռային արևադարձի շրջանում, երբ սկսվում է ցե-
րեկվա երկարումը և կարծես շրջադարձ է կատարվում
դեպի տաքանալը, դեպի գարունը։ Հնադարում մարդիկ
կարծում էին, որ այդ օրերին ծնվում է նոր աստված և
հանդիսավոր կերպով այդ իրադարձությունը նշում էին։*

*Քրիստոսի ծնունդը, ինչպես և զատիկը, հոգևորա-
կանության կողմից միշտ օգտագործվել է նրա համար,
որպեսզի հավատացյալ մարդկանց ներշնչեն հլու և
համբերատար լինել, որպեսզի հնազանդվեն և չդիմա-
դրեն չարին։ Եկեղեցու սպասավորները ծննդյան քա-
րոզներում մտքեր են պարունակում երկրային չարչա-
րանքների անհրաժեշտության մասին՝ հանուն «այն
աշխարհում» երջանիկ կյանքի։ Այդ անիրական երկնա-
յին երջանկությունը մարդկանց հեռացնում է իսկական
երկրային երջանկությունից։ Այդ պատճառով էլ ծննդ-
յան և զատկական տիրացուների քարոզները խորթ են
սովետական ժողովրդին, անհամատեղելի են նրա վեհ
խնդիրների հետ։*

«Պատասխաններ հավատացյալներին» գրքից



# ԿԱՊԻՏԱԼԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

(Թվեր և փաստեր)

Կապիտալիզմը քայքայում է հասարակությունը, ընտանիքը,
մարդուն: Կապիտալիստական երկրներում մարդը մարդու համար
գայլ է: Մշտական գործազրկություն, աղքատություն, հանցագործու-
թյունների աճ, կուլտուրայի անկում, ազգային և ռասայական
խտրականություն, ահա ինչ է տալիս կապիտալիզմը աշխատավոր
մարդուն:

*Վերջին 10—15 տարվա ընթացքում ԱՄՆ-ում, Անգլիայում և
կապիտալիստական մյուս երկրներում կատաստրոֆիկ չափերով
աճում են հանցագործությունները, հատկապես դեռահասների հան-
ցագործությունները։*

*Անգլիայում երեք տարի առաջ տեղի ունեցած բոլոր հանցա-
գործությունների 35,1 տոկոսը կատարել են 8-ից մինչև 17 տարե-
կան տղաներն ու աղջիկները։ Ներկայումս այդ տոկոսն ավելի է
բարձրացել։*

*Տարեցտարի ԱՄՆ-ում ավելանում են անչափահասների հան-
ցագործությունները։ «Երեխաների և երիտասարդության պրոբլեմը
ուսումնասիրող բյուրոյի» տվյալներով 10—17 տարեկան դեռահա-
ների կատարած հանցագործությունները 1940—1960 թվականների
ընթացքում ավելացել է 10 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջո-
ցում ԱՄՆ-ում բնակչությունն աճել է ընդամենը 1,6 տոկոսով։*

*Ավելի ու ավելի է աճում անչափահասների կատարած հանցա-
գործությունները Անգլիայում։ 1938—1961 թվականների ընթացքում
14—17 տարեկան պատանիների ու աղջիկների հանցագործություն-
ներն աճել են 225 տոկոսով, իսկ 17—20 տարեկաններինը՝ 260 տո-
կոսով։*

*Վերջերս ԱՄՆ-ում շատ հարուստներ սկսել են ձրիաբար աշ-
խատեցնել կարիքի և աղքատության մեջ գտնվող մարդկանց, հատ-
կապես նեգրերին և մեքսիկացիներին։ Կոննեկտիկուտ նահանգի
Միդլֆիլդ բնակավայրի ֆերմեր Դևիդ Շակնեյը օգտվելով մեքսի-
կացի գործազուրկ Լուիս Օրոսի թշվառ վիճակից, նրան և նրա ըն-
տանիքի անդամներին, թվով 7 հոգի, ամիսներով, առանց աշխա-
տավարձի աշխատացրել է արևածագից մինչև արևամուտ և փոխա-
րենը միայն կերակրել, այն էլ այնքան, որ չմեռնեն։*

Միացյալ Նահանգների գրեթե բոլոր քաղաքներում հանցագործների խմբեր են գործում։ Ամերիկյան «Լուկ» ամսագիրը Վաշինգտոնը անվանել է հանցագործներով վարակված հիվանդ քաղաք։ Գրականագետ Փ. Կնիբելի վկայությամբ քաղաքում, հատկապես նրա շրջակայքում, վխտում են ավազակները և մարդու կյանքը միշտ վտանգի տակ է։

Մարդասպանների և նարկոտիկներ վաճառողների մի խոշոր ընկերություն է գործում ԱՄՆ-ում, որը հայտնի է «Կոզա Նոստրա» անունով։ Այդ հանցագործ ընկերությունը մասնաճյուղեր ունի երկրի բոլոր մասերում։ Իմպերիալիստական շրջանների քաղաքական շատ գործիչներ օգտվում են մարդասպանների այդ ընկերության ծառայություններից։

Նյու-Յորքի ոստիկանության պետը թղթակիցներին հայտնել է, որ քաղաքում լուրջ հանցագործությունների թիվը 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, աճել է 10,5 տոկոսով, այդ թվում գողության դեպքերը՝ 15 տոկոսով, ավտոմեքենաների հափշտակումները՝ 19 տոկոսով, սպանությունները՝ 8 տոկոսով։

Գնալով ԱՄՆ-ում ուժեղանում են ռասիստների հանցագործությունները։ Վերջերս Միսիսիպիի հինգ բնակավայրերում ռասիստները նեգրերի և նրանց իրավունքների համար պայքարող մարտիկների դեմ գործադրել են հրազեն, ռումբ, հրդեհիչ խառնուրդ պարունակող շշեր և արտասվաբեր գազ ու մնացել անպատիժ։

Հարավ-Աֆրիկայի ռասիստները, վայելելով Ֆերվուրդի և նրա կառավարության հովանավորությունը, խոշտանգում և ոչնչացնում են հազարավոր սևամորթների և պրոգրեսիվ գործիչների։ Օրերս Ֆերվուրդի ֆաշիստական դատարանի որոշմամբ մահապատժի ենթարկվեցին պրոֆմիութենական երեք լավագույն գործիչներ, որոնք պայքարում էին իրենց երկրի անկախության համար։

Այս տարվա ամռանը ԱՄՆ-ի ռասիստները Ալաբամա նահանգի Բիրմինհեմ քաղաքում և շատ վայրերում սպանեցին, խոշտանգեցին և բանտերը նետեցին բազմաթիվ նեգրերի։ Զբավարարվելով դրանով նրանք պայթեցրին, հրկիզեցին անմեղ ու անպաշտպան շատ նեգրերի տներ։ Նեգրերի նկատմամբ եղած հալածանքը շարունակվում է։

Ճապոնիայում յուրաքանչյուր րոպեի ընթացքում կատարվում է երեք հանցագործություն։ Երկրում գործում են մոտ 5 հազար գանգստերական բանդաներ, որոնց մեջ հավաքագրված են 170 հազար հանցագործներ։



Այժմ Ճապոնիայում հանցագործությունը հասել է հսկայական չափերի։ Միայն անցյալ տարի երկրում կատարվել է 1,5 միլիոն հանցագործություն, ձերբակալվել է 660 հազար հանցագործ, կամ 40 հազարով ավելի, քան 1962 թվականին։

Արևմտյան Գերմանիայում տեղավորված ամերիկյան զինվորները կատարում են ամեն տեսակի հանցագործություններ։ Միայն 1964 թվականի հոկտեմբեր ամսվա ընթացքում արևմտա-գերմանական երկու քաղաքների 3.000 բնակիչներ ենթարկվել են նրանց կողմից տեռորի՝ ծեծվել են, բռնաբարվել և դանակահարվել։

Ամերիկյան ժուռնալիստներից մեկը դառնությամբ գրում է, թե պատանի ամերիկացիները արդեն 12 տարեկանից սկսած հիանալի գիտեն հանցագործ կյանքի սկզբունքները։ Իսկ Լոս-Անժելոսի հեռուստատեսության կայանի դիրեկտորը հաշվել է, որ 13 տարեկան դպրոցականը միայն հեռուստատեսությամբ տարեկան հասցնում է տեսնել 13 հազար սպանություն։

Միացյալ Նահանգներում գոյություն ունեն մի շարք քաղաքներ, ավաններ և շրջաններ, որոնց բնակիչների համար գործազրկությունը վաղուց դարձել է խրոնիկական։ Միայն Ապալաչյան լեռներում գտնվող ածխային շրջանից վերջին 10 տարիներին փախել են մեկ ու կես միլիոն երիտասարդներ՝ գործազրկության սարսափելի հետևանքներից փրկվելու համար։

Վիճակագրական տվյալների համաձայն միայն 1964 թվականի առաջին կեսին ապրուստի միջոցներ հայթայթելու համար Հունաստանից այլ երկրներ են մեկնել 51.427 մարդ։

Կոլումբիայի երեք դեպարտամենտների տարրական դպրոցների 5000 ուսուցիչներ գործադուլ են հայտարարել՝ պահանջելով մտցնել դեմոկրատական համընդհանուր ձրի կրթություն։

Ֆրանսիայում հանցագործությունը 10—18 տարեկան անչափահասների շրջանում խստորեն աճում է։ Բավական է ասել, որ 1956 թվականի համեմատությամբ 1963 թվականին անչափահաս հանցագործների թիվը կրկնապատկվել է։

Ամերիկյան Ալաբամա նահանգի Նոտասուլգայի քաղաքագլուխը այս տարվա փետրվարին կատարեց մեր ժամանակների համար տարօրինակ միջոցառում՝ փակեց քաղաքում եղած բոլոր երեք դպրոցները։ Դրա նպատակն էր թույլ չտալ հարևան բնակավայրերից նեգր երեխաներին ընդունվելու դպրոցները։ Ամերիկյան ռա-

իստների մեղքով դպրոցից զրկվեցին ոչ միայն նեգր, այլև սպիտակամորթ երեխաները։

Պարագվայում հաստատված ոստիկանական-տեռորիստական տիրապետությունը երկիրը հասցրել է ծայրահեղ քայքայման։ Բավական է ասել, որ յուրաքանչյուր 100 մարդուց 80-ը տառապում են թոքախտով և այլ վտանգավոր հիվանդություններով։ Բյուջեի միայն 5 տոկոսն է հատկացված առողջապահության համար։

Նույն Պարագվայում կա 25 հազար բանվոր և 30 հազար ոստիկան։ Երկրի բնակչության 30 տոկոսը (700.000) արտաքսված է երկրից։

Տոկիոյի ոստիկանությունը ձերբակալել է գանգստերների մի խմբի, որոնք սարսափի և խաբեբայության օգնությամբ անչափահաս աղջիկներին ստիպում էին ընդունվելու Տոկիոյի հասարակաց տները։ Մինչև բանտարկությունը այդ գանգստերներին հաջողվել էր խաբել 16—17 տարեկան 43 աղջիկների։

Հայիթի կղզին դարձել է աղքատության և անգրագիտության կղզի։ Բնակչության 85 տոկոսը անգրագետ է, յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է մեկ բժիշկ։ Կյանքի միջին տևողությունը կղզում կազմում է 35 տարի։

Պաշտոնական տվյալների համաձայն Բրազիլիայի բնակչության կեսը՝ 80 միլիոնը ապրում է գյուղերում։ Հիմնականում դրանք հողազուրկ գյուղացիներ են, որոնք երազում են ունենալ մի փոքրիկ հողակտոր իրենց խղճուկ գոյությունը քարշ տալու համար։ Միևնույն ժամանակ երկրի հողերի կեսը պատկանում է միայն 32 հազար մարդու։

Վերջերս Ֆրանսիայում հրապարակվել են վիճակագրական տվյալներ քրեական հանցագործությունների մասին։ Քրեական հանցագործները բաժանվել են ըստ սոցիալական խմբերի։ Իշխանությունների նպատակն էր պարզել, թե սոցիալական որ խումբն է շատ հանցագործներ տալիս։ Ի զարմանս բոլորի, ցուցակի մեջ առաջին տեղը բռնեցին կապիտալիստները, արդյունաբերողներն ու վաճառականները։ Այդ սոցիալական խմբի 100 հազար մարդուն ընկնում է 1.138 քրեական հանցագործություն։

Ուրուգվայի աշխատող բնակչության 12 տոկոսը կամ 122 հազար մարդ լրիվ գործազուրկ են։ Գործազրկությունը առանձնապես շատ է շինարարների, մետալուրգների և ծառայողների շարքերում։

Այս բոլոր փաստերը ցույց են տալիս, որ կապիտալիզմը աշխատավոր մարդու թշնամին է։ Նա աշխատավորներին բացի չարիք ու թշվառություն պատճառելուց ուրիշ ոչինչ չի կարող տալ։



# ԱՇԽԱՐՀԻ ԵՐԿՐՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ*)

| Երկիր | Տարածությունը (հազար քառակուսի կիլոմետրով) | Բնակչությունը (միլիոն մարդ) | Մայրաքաղաքը |
|---|---|---|---|
| 55. Կուբա | 115 | 7,203 | Հավանա |
| 56. Քուվեյտ | 15 | 0,33 | Էլ—Քուվեյտ |
| 57. Կենտրոնական Աֆրիկյան Ռեսպուբլիկա | 617 | 1,25 | Բանգի |
| 58. Հունաստան | 132,7 | 8,5 | Աթենք |
| 59. Հունգարիա | 93 | 10,2 | Բուդապեշտ |
| 60. Հնդկաստան | 3286 | 461 | Դելի |
| 61. Հաիթի | 28 | 4,3 | Պորտ—օ—Պրենս |
| 62. Հարավսլավիա (Սոցիալիստական ֆեդերատիվ ռեսպուբլիկա) | 256 | 19,067 | Բելգրադ |
| 63. Հարավային Կորեա | 9 | 27,277 | Սեուլ |
| 64. Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկա | 1223 | 17,075 | Պրետորիա |
| 65. Հարավային Վիետնամ | 71 | 15,317 | Սայգոն |
| 66. Ճապոնիա | 372 | 95,899 | Տոկիո |
| 67. Մավրիտանիա | 1086 | 0,77 | Նուակշոտ |
| 68. Մալավի | 119,3 | 3,0 | Զոմբա |
| 69. Մալայզիա | 329,7 | 10,366 | Կուալա-Լումպուր |
| 70. Մալի | 1204 | 4,305 | Բամակո |
| 71. Մալգաշական Ռեսպուբլիկա | 592 | 5,730 | Տանանարիվե |
| 72. Մարոկկո | 444 | 12,36 | Ռաբատ |
| 73. Մեքսիկա | 1969 | 38,416 | Մեխիկո |
| 74. Մոնակո | 1,5 քառ.կմ. | 0,023 | Մոնակո |
| 75. Մոնղոլիա (ՄԺՌ) | 1565 | 1,02 | Ուլան—Բատոր |
| 76. ԱՄՌ | 1000 | 27,285 | Կահիրե |
| 77. Մեծ Բրիտանիա | 244 | 53,441 | Լոնդոն |

* Սկիզբը տես նախորդ համարում։

| | | | |
|---|---|---|---|
| 78. Ճամայկա | 12,2 | 1,687 | Կինգստոն |
| 79. Նեպալ | 140 | 9,407 | Կատմանդու |
| 80. Նիգեր | 1189 | 3,117 | Նիամեյ |
| 81. Նիգերիա | 878 | 55,653 | Լագոս |
| 82. Նիդերլանդներ (Նիդերլանդական Թագավորություն) | 32,5 | 11,967 | Ամստերդամ |
| 83. Նիկարագուա | 148 | 1,541 | Մանագուա |
| 84. Նոր Զելանդիա | 268 | 2,538 | Վելինգտոն |
| 85. Նորվեգիա | 324 | 3,667 | Օսլո |
| 86. Շվեյցարիա | 41 | 5,81 | Բեռն |
| 87. Շվեդիա | 450 | 7,604 | Ստոկհոլմ |
| 88. Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկա | 9597 | 716 | Պեկին |
| 89. Չադ | 1284 | 2,86 | Ֆորտ Լամի |
| 90. Չեխոսլովակիայի Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 128 | 14 | Պրագա |
| 91. Չիլի | 742 | 8,222 | Սանտյագո |
| 92. Պակիստան | 944 | 101,5 | Ռավալպինդի |
| 93. Պանամա | 75 | 1,177 | Պանամա |
| 94. Պարագվայ | 407 | 1,903 | Ասունսոն |
| 95. Պերու | 1285 | 10,857 | Լիմա |
| 96. Պորտուգալիա | 92 | 9,039 | Լիսաբոն |
| 97. Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկա | 237,5 | 18.813 | Բուխարեստ |
| 98. Ռուանդա | 26,3 | 2,665 | Կիգալի |
| 99. Սալվադոր | 20 | 2,721 | Սան-Սալվադոր |
| 100. Սամոա (Արևմտյան) | 2,9 | 0,114 | Ապիա |
| 101. Սան-Մարինո | 61 ք. կմ. | 0,015 | Սան-Մարինո |
| 102. Սաուդական Արաբիա | 1600—2400 | 7,5 | Էր-Րիյադ |
| 103. Սենեգալ | 201 | 3,11 | Դակար |
| 104. Սիրիական Արաբական Ռեսպուբլիկա | 181 | 5,251 | Դամասկոս |
| 105. Սոմալի | 637 | 2,25 | Մոգադիշո |
| 106. Սովետական Միություն | 22402 | 228 | Մոսկվա |



| | | | |
|---|---|---|---|
| 107. Սուդան | 2506 | 12,831 | Խարտում |
| 108. Սիերա-Լեոնե | 72 | 2.6 | Ֆրիտաուն |
| 109. Վատիկան | 45 ք. կմ. | 1 հազ. մարդ | Զետեղված է Հռոմի տերիտորիայում |
| 110. Վենեսուելա | 912 | 8,144 | Կարակաս |
| 111. Վերին Վոլտա | 274 | 4,4 | Ուագադուգու |
| 112. Վիետնամ (Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկա) | 157 | 15,903 | Հանոյ |
| 113. Տանգանիկայի և Զանզիբարի Միացյալ Ռեսպուբլիկա | 941,7 | 10,118 | Դար-էս-Սալամ |
| 114. Տաիլանդ | 512 | 28,835 | Բանգկոկ |
| 115. Տոգո | 56,6 | 1,586 | Լոմե |
| 116. Տրինիդադ և Տոբագո | 5 | 0,894 | Պորտ-օֆ-Սպեյն |
| 117. Ցեյլոն | 66 | 10,625 | Կոլոմբո |
| 118. Ուգանդա | 244 | 7,016 | Կամպալա |
| 119. Ուրուգվայ | 187 | 2,556 | Մոնտեվիդեո |
| 120 Փղոսկրյա ափ | 322 | 3,4 | Աբիջան |
| 121. Քենիա | 583 | 8,847 | Նայրոբի |
| 122. Ֆիլիպիններ | 299 | 30,241 | Կեսոն-Սիտի (փաստացի՝ Մանիլա) |
| 123. Ֆինլանդիա | 337 | 4,542 | Հելսինկի |
| 124. Ֆրանսիա | 552 | 48,09 | Փարիզ |

## ԱՀԱՎՈՐ ԹՎԵՐ

*Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ սպանվել է 54 միլիոն 800 հազար մարդ, վիրավորվել՝ 90 միլիոն մարդ։ Երկու համաշխարհային պատերազմները՝ 1914—1918 և 1939—1945 թվականներին, այսինքն 10 տարվա ընթացքում մարդկությանը պատճառել են 66 միլիոն զոհ։ Վիրավորվել և խեղանդամ են դարձել 107 միլիոն մարդ։*

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի հաղթանակների կազմակերպիչն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Պարտիան կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, *ՍՄԿՊ ծրագրից։*

*Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ—* Զեկուցում Կրեմլի համագումարների պալատում, 1964 թ. նոյեմբերի 6-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 7-ի համարում։*

Լենինյան կուրսով, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 12-ի համարում։*

Հավատարմություն լենինյան կազմակերպական սկզբունքներին, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 19-ի համարում։*

Ժողովրդի պարտիան, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թ. 22-րդ համարում։*

## 2. ՍՍՌՄ-ը պայքարում է խաղաղության համար, խաղաղության պահպանումը կյանքի պահանջն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Կոմունիզմի և խաղաղության համար մղվող պայքարի ավանգարդում, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 11-ի համարում։*

Անսասան հավատարմություն ժողովրդի շահերին, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 14-ի համարում։*

Կոնգոյի դրության մասին, ՏԱՍՍ-ի հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 22-ի համարում։*

Սովետական կառավարության հայտարարությունը Բելգիայի կառավարությանը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 26-ի համարում։*

ՏԱՍՍ-ի հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 28-ի համարում։*

## 3. Գյուղատնտեսության աշխատողների պատվի գործը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Լայն շարժում ծավալել անասունների ձմեռումը հաջող անցկացնելու համար, *որոշում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 22-ի համարում։*



Լրիվ օգտագործենք մեր ռեզերվները, *հոդված, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1964 թ. 11-րդ համարում։*

Ինչպե՞ս կիրառել լրացուցիչ վարձատրության սկզբունքը, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 11-ի համարում։*

## 4. Որակի գլխավոր հսկիչը բանվորական խիղճն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Բարձր որակ, անա նշանաբանը, *«Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 13-ի առաջնորդողը։*

Քննարկում են որակի հարցերը, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 24-ի համարում։*

Արտադրանքի որակի հարցը հրատապ է, *հոդված, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1964 թ. 10-րդ համարում։*

## 5. Վերացնենք անարտադրողական ծախսերը, տնտեսենք և խնայենք հումքը, էներգիան

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Առավելագույն ուշադրություն խնայողությանն ու տնտեսմանը, *«Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 25-ի առաջնորդողը։*

Փակել խոտանի սողանցքները, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 27-ի համարում։*

Օգտագործել ավյալ ձեռնարկությունից վերցված փաստերը։

## 6. Ժողովուրդների միասնական ընտանիքում

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Պարտիայի խնդիրները ազգային հարաբերությունների բնագավառում, *ՍՄԿՊ ծրագրից։*

Ուզբեկստանը տոնում է իր քառասնամյակը, *ինֆորմացիոն նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 21-ի համարում։*

Պանծալի քառասնամյակ, *ինֆորմացիա, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 26-ի համարում։*

*Շ. ՌԱՇԻԴՈՎ—* Միասնական, ազատ նոր ընտանիքում, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 20-ի համարում։*

*Մ. ԳԱՖՈՒՐՈՎ—* Քառասուն տարի համերաշխ ընտանիքում, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 25-ի համարում։*

*Մ. ԽՈԼՈՎ—*Եղբայրական ժողովուրդների ընտանիքում, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 29-ի համարում։*

## ՄԻՆԻՏՄԵՆՆԵՐ

**ՄԻՆԻՏՄԵՆՆԵՐ** *են կոչվում ԱՄՆ-ում գործող ֆաշիստական ֆանատիկների գաղտնի զինված կազմակերպությունները, որոնց անդամների թիվը ըստ մամուլի հաղորդագրությունների կազմում է մոտավորապես 25 հազար մարդ։ Մինիտմենները պարտադիր կարգով անցնում են ռազմական պատրաստականություն։ Պարապմունքներն իրականացվում են գաղտնի՝ գիշերները։ Մինիտմենները իրենց նպատակներն իրականացնելու համար օգտագործում են նաև ԱՄՆ-ում պաշտոնապես գործող հրաձգային ակումբների լայն ցանցը, որոնք մտնում են ազգային հրաձգության ասոցիացիայի մեջ։ Պաշտպանության մինիստրությունն ամեն տարի այդ ասոցիացիային անվճար հանձնում է 60 միլիոն հատ հրացանի և ատրճանակի փամփուշտներ ու մեծ քանակությամբ հնացած զենք։ Այդ զենքն էլ հենց բաժանվում է հրաձգային ակումբի անդամների մեջ։ Աջ էքստրեմիստները, նույն թվում և մինիտմենները, անդամագրվելով այդ ակումբներին, պատրաստում են իրենց զինված ջոկատները։*

## ԱՄԵՐԻԿԱՆԻԶՄ

**ԱՄԵՐԻԿԱՆԻԶՄ** *է կոչվում ամերիկյան միլիոնատերերի ու միլիարդատերերի և նրանց պնակալեզ «գաղափարախոսների» ազգային դոկտրինան, որն իրենից ներկայացնում է մարդու նյութական և հոգևոր կեղեքման սիստեմ։ Ամերիկանիզմի երկրպագուները պճնազարդում են ամերիկյան ապրելակերպը, գովաբանում ուրիշ ժողովուրդների ամերիկացման ենթարկվելու, այսինքն ազգային արժանապատվությունից, սեփական ազգային շահերից հրաժարվելու անհրաժեշտությունը։ Նրանք գովաբանում են կոսմոպոլիտիզմը, դատապարտում ազգային ազատագրական շարժումները, խաղաղության համար պայքարելը։*

*Ամերիկանիզմի վերջնական նպատակն է հիմարացնել ժողովուրդներին, նրանց մեջ մշակել կույր հնազանդություն ամերիկյան իմպերիալիստների նկատմամբ։*





## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ս. ԱԼԻԽԱՆՅԱՆ, Սովետական Ռուսաստանի դերը հայ ժողովրդի ազատագրման գործում (1917—1921 թթ.), *Հայպետհրատ, 400 էջ, տպաքանակ. 3000, գինը 57 կոպ.։*

*Աշխատությունը ներկայացնում է Անդրկովկասում և Հայաստանում Հա- 1917—1921 թվականներին ծավալված իրադարձությունները, յաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հայ ժողովրդի մղած ռևոլյուցիոն-ազատագրական պայքարը։ Գիրքն սկսվում է բովանդակալից առաջաբանով։*

Գ. ԴԱԼԼԱՔՅԱՆ, Անդրկովկասի աշխատավորության ինտերնացիոնալ համախմբման համար: 1914—1917: *Հայպետհրատ, տպաքանակ 2000, գինը 35 կոպ.։*

*Գրքում լուսաբանված է Անդրկովկասի բոլշևիկների հետևողական պայքարը աշխատավորների ինտերնացիոնալ համախմբման համար, ընդդեմ բուրժուական նացիոնալիզմի։*

Պրոֆ. դ-ր ԱՌԱՔԵԼ ԱՌԱՔԵԼՅԱՆ, Հայ ժողովրդի մտավոր մշակույթի զարգացման պատմություն: 14—19-րդ դարերի առաջին կեսը, *հատոր երկրորդ, Հայպետհրատ, 650 էջ, տպաքանակ 3000, գինը 2 ռ. 4 կոպ.։ Գրքի վերջում տրված են առաջին և երկրորդ հատորների անձնանունների ցանկերը։*

Նյութեր Հայաստանի գյուղատնտեսության և գյուղացիության պատմության, *հատոր առաջին, ՀՍՍՌ ԳԱ հրատարակություն, տպաքանակ 1000, գինը 1 ռ. 16 կոպ.։*

*Ժողովածուում լուսաբանվում են գյուղատնտեսական արտադրության և անմիջական արտադրողների պատմության բազմաթիվ հարցեր, սկսած հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը։*

Վ. Մ. ԳԱԲՈՒԶՅԱՆ, Փողի ծագումը և ֆունկցիաները, *Հայպետուսմանկհրատ, 129 էջ, տպաքանակ 1500, գինը 13 կոպ.։*

*Փոխանակության և արժեձևերի զարգացման պատմական պրոցեսի մարքսյան վերլուծության հիման վրա գրքույկում ցույց է տրվում փողի ծագման պատմական պրոցեսը։ Հանգամանորեն խոսվում է փողի դեր կատարած ապրանքների, դրամական սիստեմների և փողի ֆունկցիաների մասին։ Վերջին գլխում քննադատվում են փողի բուրժուական և մանրբուրժուական տեսությունները՝ հատկապես այդ տեսությունների արդի տարբերակները։*

Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին, *հատոր երկրորդ, ՀՍՍՌ ԳԱ հրատարակություն, 336 էջ, տպաքանակ 3000, գինը 1 ռ. 33 կոպ.։*

*Աշխատության այս հատորը բովանդակում է նյութեր հայ և հարևան ժողովուրդների պատմության, պատմական աշխարհագրության, սոցիալ-քաղաքական և տնտեսական կյանքի վերաբերյալ։ Նյութերը քաղված ու թարգմանված են 16—18-րդ դարերի թուրք պատմագիր տարեգիրների երկերից։*

ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ի
1965 թվականի
բաժանորդագրությունը.
1 ամիսը — 15 կոպեկ
6 ամիսը — 90 կոպեկ
12 ամիսը — 1 ռուբ. 80 կոպեկ
«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 23
## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 10642 Պատվեր 1235 Տիրաժ 8933

Հանձնված է արտադրության 27/XI 1964 թ.։
Ստորագրված է տպագրության 7/XII 1964 թ.։

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,
Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.։